# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة "ج.ع.م" - ت ٩١٥٠١٣
صاحبة الامتياز: السيدة عايدة سيروبيان (بالايان)

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B.P. 2111 Le Caire (R.A.U.) - Tél.915013
Adresse Télégraphique: TCHAHAKIR, Cairo
Rédacteur en chef; SARKIS BALAYAN

Արտօնատէր — ԱՅՏԱ ՍԵՐՈՎԲԵԱՆ
Սեփականատէր խմբագիր — ՍԱՐԳԻՍ ՊԱԼԱԵԱՆ

Հիմնուած 1948ին

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 37 — ՀԻՆԳՇԱԲԹԻ 23 ՅՈՒԼԻՍ 1964 ՀԱՏԸ ԶԵՌՈՒԲԷ 2,5 Եգ. Դհկ. կամ 25 Լիբ. Դհկ. عدد رقم ٣٧ – الخميس ٢٣ يوليـــة ١٩٦٤


# ՈՂՋՈՅՆ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԵԱՆ 12ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

## ԱՐԱԲԱԿԱՆ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԵԱՆ ՏԱՍՆԵՐԿՈՒԱՄԵԱԿԸ

Յուլիս 23։

Կը տօնենք տասներկուերորդ տարեդարձը այն հրաշալի դէպքին, որ կը կոչուի Յեղափոխութիւն, նաեւ ա՛յս երկրին մէջ, ուր իշխած էին, անյիշատակ դարերէ ի վեր, օտարներ կամ օտարածիններ, առանց առիթ տալու որ երկրին զաւակը, հողին բուն տէրը, պահ մը իսկ տիրանայ ու տիրէ անոր։

Դարեր եւ դարեր, բնիկ հարազատ ժողովուրդը, ոչ միայն չէր կրցած տէրն ըլլալ իր հողին, այլեւ չէր կրցած տէրն ըլլալ ինքն իրեն, իր ճակատագրին, իր ապագային։

Եգիպտացին, որ արաբ էր այլեւս, իր մահմետական եւ քրիստոնեայ բաժանումներովը, մի՛շտ գերիշխուած եղաւ յափշտակիչներէ, բարբարոսներէ, գաղութարարներէ, կայսերապաշտներէ եւ օտարածին ինքնակալներէ։

Այս երկրին տիրեցին, փոխն ի փոխ, Հռոմայեցին, Յոյնը, Տաճիկը, Ալպանացին, Ֆրանսացին, Բրիտանացին եւ այլն։

Մի՞թէ եգիպտացի արաբը զու՞րկ էր ազատութեան եւ անկախութեան զգացումներէն ու գաղափարներէն։ Անզգա՞յ էր Ֆրանսական Մեծ Յեղափոխութեան բերած գեղեցիկ սկզբունքներուն եւ իրականութեանց առջեւ։ Անընդունա՞կ էր հերոսական արարքներու եւ վսեմ նուիրականութեանց կատարուելիք զոհողութեանց։

Ո՛չ։

Եգիպտացին ո՛չ զուրկ էր գաղափարականութենէ, ո՛չ անզգայ էր եւ ո՛չ ալ անընդունակ՝ յառաջդիմականութեան։ Ան տենը անգամ մը ան գլուխ կը ցցէր... բայց բռնակալ իշխողը կը ճզմէր այդ բարձրացող գլուխը, հարուածով մը՝ կէս կամ աւելի դար կրկին հեռացնելով յեղափոխութիւնը։

Ահմէտ Օրապի զօրավարին ըմբոստութեամբը՝ 1881ին, սկսաւ աւելի յստակ ձեւ ու կերպարանք ստանալ արաբական յեղափոխականութիւնը։ Փշրուեցաւ Օրապիականութիւնը, բայց չմեռաւ, չկորաւ...։ Մոհամմէտ Ֆարիտ, Մուստաֆա Քամէլ ծաղկեցուցին, արգասաւորեցին էլ–Աֆղանիի գաղափարները ու մենք ունեցանք Սաատ Զաղլուլը, արաբ յեղափոխականներու արիագոյն եւ ամենէն խորամիտ լիտրը, որ 1919ի յեղափոխական շարժումով՝ կրցաւ, գէթ թուղթի վրայ, ապահովել այս երկրին ազատութիւնն ու անկախութիւնը, որ աւելի ուշ վերածուեցաւ ներքին ինքնավարութեան մը։

Վերահաստատուեցաւ «փոխարքայ»ութիւնը, որ սկսած էր Խըտիւութեամբ, այս անգամ «թագաւորութիւն» պիտակով եւ ալպանացի վեհապետի մը պարտադրումովը։ Ֆուատ Ա. եւ անոր յաջորդող իր որդին՝ տխրահռչակ Ֆարուք, անունով եգիպտացի, բայց սիրտով տաճիկներ էին, քուիզլինկները տիրող կայսերապաշտներուն, գործիք՝ գաղութարարներուն։

Արաբ ժողովուրդին պարտադրուած թագաւորութիւնը կը շահագործէր երկիրը, կը կեղեքէր ժողովուրդը իր հաշուոյն եւ ի հաշիւ իր տիրոջ՝ միջազգային դրամատիրութեան։ Արաբ գիւղացին եւ բանւորը՝ իսկութեան մէջ կատարեալ ճորտ էին։

1952 Յունուար 26ին տեղի ունեցաւ ահռելի հրդեհ մը այս երկրի մայրաքաղաքին ու քաղաքներուն մէջ։ Ասիկա ապացոյցն էր 1948ի պաղեստինեան պատերազմին աւրուած զէնքեր գնող եւ երկրին զաւակները մահուան առաջնորդող, ապա՝ թղթախաղի եւ անառակութեան ճամբով երկիրը տնտեսապէս քանդող արքայականութեան վերջնական այլասերումին ու փտումին։ Անհրաժեշտ էր նժդրակել։

Եւ ահա՛, տասնըմէկ արի զինուորականներ, «Ազատ Սպաներ» անունով, երդումով կը կապուին իրարու՝ փրկելու իրենց հայրենիքը։ 1952 Յուլիս 23ին սկսաւ փրկարար բանակին յառաջխաղացումը դէպի արքայական պալատը, եւ գրեթէ առանց արիւնահեղութեան՝

( Շար. տես էջ 5 )



## ԱԶԳԱՅԻՆ ՀԵՐՈՍ ՆԱԽԱԳԱՀ ԿԱՄԱԼԻՆ

Նեղոսի Հովտի որդի հարազատ,
Աննկուն կորովով, քաջութեամբ արդար,
Հիմնադիրն եղար, կերտիչը ճարտար,
Նոր Եգիպտոսին՝ վերջապէս ազատ:

Քանդեցիր հիմէն լուծը դարաւոր
Բռնակալութեան հին արեւելեան,
Խզեցիր նոյնպէս ժանգոտած շղթան
Գաղթապետութեան՝ այնքան նենգաւոր։

Ապահովեցիր այս երկրին օրհնեալ,
Դիրք մը ապահով, վերելք փառաւոր,
Ու ժողովրդին կեանք մը պատուաւոր,
Հաւասարութեան խունկովը օծեալ:

Բիւրաւոր հայեր հէք, հալածական
Գտած ապահով, բարի ապաստան,
Այս երկրին մէջ յոյժ ասպնջական
Կը մաղթեն սրտանց ու ԱՄՀ յաւիտեան

Ապրի. բարձրանայ, մնայ անսասան,
Նախագահովն իր մեծ, ազատարար,
Անսայթաք քալէ ճամբէն այս երկար,
Դարաշրջանին նոր եւ աննրման:

ՏՈՔԹ. ՇԱՀՆԱԶԱՐ ՈՐԲՈՒՆԻ

## ԱՓՐԻԿԵԱՆ ԳԵՐԱՍՏԻՃԱՆ Բ. ԺՈՂՈՎԸ

Երկուշաբթի, 21 Յուլիս 1964ին վերջացաւ Ափրիկեան Գերաստիճան Բ. Ժողովը, որ իր նիստերը սկսած էր Գահիրէի մէջ, Յուլիս 17ին, մասնակցութեամբ ափրիկեան 33 ազատ պետութեանց նախագահներուն, վեհապետներուն եւ բարձր ներկայացուցիչներուն։ Տրուեցան 23 կարեւոր որոշումներ, որոնց մէջ կան հետեւեալները.—

Տարեկան մէկ ժողով գումարել, Ափրիկեան Միութեան Կազմակերպութեան կեդրոն դարձնել Ատիս Ապեպան, Օրէնսգէտներու Յանձնախումբ կազմել, Փրոթոքոլ տալ Հաշտարար Յանձնախումբին, դատապարտել ցեղային խտրականութիւնը եւ պայքարիլ Փորթուկալի եւ Հարաւ. Ափրիկէի գաղութարարութեան դէմ, ազատել քաղ. բանտարկեալները, պայքարիլ Ռոտեզիոյ սպիտակամորթ իշխանութեան դէմ, Անգլիան մղել՝ պատրաստելու Ռոտեզիոյ սահմանադրութիւնը, կազմել կրթամշակութային յանձնախումբ, տնտեսաընկերային յանձնախումբ, սնունդի եւ առողջ. յանձնախումբ, գիտական–գեղարուեստ. յանձնախումբ, պաշտպն. յանձնախումբ, օրէնսգէտներու յանձնախումբ եւ փոխադրթ. յանձնախումբ։ Ընդունուեցան Նախագահ Նասէրի գործնկ. առաջարկները՝ յեղ. պատասխանատուութեանց մասին։ Յաջորդ ժողովը՝ Ղանայի մայրաքաղաք Ագրայի մէջ, 1965 Սեպտ.ին։



# ՀԱՅԿԱԿԱՆ ԿԵԱՆՔ

## ԵԳԻՊՏՈՍ

### ՃԱՐՏԱՐԱՊԵՏ ՀՐԱԶԴԱՆ ՊԱԼԵԱՆ
### Ա· ԿԱՐԳԻ ՇՔԱՆՇԱՆԻ ԱՐԺԱՆԱՑԱԾ

Ուրախութեամբ կը տեղեկացնենք, որ մեր բարեկամ, յայտնի ճարտարապետ և ազգային երեսփոխան Պր· Հրազդան Պալեան՝ Ա· Մ· Հ·ի Նախագահ Կամալ Ապտէլ Նասէրի կողմէ պարգեւատրուած է Ա·Մ·Հ·ի Առաջին Կարգի Ոսկի Շքանշանով, ըստ Նախագահական 12 Յուլիս 1964 Թուակիր հրովարտակին (ֆերման)։

Ս· Միութեան Վարչապետ Նիքիթա Խրուշչովի Ա·Մ·Հ· այցելութեան ժամանակ (Մայիս), Նախագահ Ապտէլ Նասէր անոր հետ այցելած է Ապու Զաապալի «Անթիպիոթիքներ»ու գործարանները և հետաքրքրուած է տեղւոյն ճարտարապետական իրականացումներով գորս կը պարտինք Պր· Պալեանի նախաձեռնութեան և յղացման։ Քիմիական դեղերու պատրաստութեան մասնաւոր շէնքերու կառուցումն ու կատարելագործումը Հնգամեայ Ծրագրին հիմնական տարրը ըլլալուն, Նախագահը՝ մեր հայրենակիցին աշխատանքը անձնապէս ալ գնահատելով. զայն «Այս վիթխարի ձեռնարկին յաջողութեան գործակից» կոչած է ու վարձատրած է Ոսկի Շքանշանով։

Մեր կարգին կը հրճուինք այս յաջողութեան համար և մենք մեզ հպարտ կը զգանք, որ Պալեան անունին արժանի մեծութեամբ Պր. Հ. Պալեան այսքան թանկագին գործակցութիւն բերած է Ա.Մ.Հ.ի յեղափոխական կառավարութեան և ընկերային յառաջդիմութեան, գնահատուելով և վարձատրուելով բարձրագոյն պարգեւով։



ՃԱՐՏԱՐԱՊԵՏ
ՀՐԱԶԴԱՆ ՊԱԼԵԱՆ

## ՀԱՅՐԵՆԻ ԱՇԽԱՐՀ

### ԵՐԵՒԱՆԻ ՆՈՐ ՓՈՂՈՑՆԵՐԸ

ՀՍՍՀի մայրաքաղաքին և քաղաքներուն մէջ նոր փողոցները կը մկրտուին ազգային անուններով։

Արամ Խաչատուրեանի անուան ձօնուած է Երեւանի լաւագոյն փողոցներէն մէկը, որ զուգահեռ է Կոմիտաս փողոցին և կ'երթայ մինչեւ Շիրվանզադէ դպրոցը։ Այստեղ բնակելի նոր թաղամաս շինուելու վրայ է։ Այս շինարարութեան մէջ աչքի կը զարնեն իրենց նուիրուածութեամբ՝ Կ. Ալոյեան, Պ. Ճուկեան և Հ. Ցովակեան։

### ՄԽԻԹԱՐ ԳՈՇԻ ՄԱՀՈՒԱՆ 750-ԱՄԵԱԿԸ

Այս տարի Հայաստանի մէջ հանդիսաւոր կերպով պիտի տօնուի միջնադարեան հայ մշակոյթի խոշորագոյն գործիչ, մեծ օրէնսգէտ և առակագիր Մխիթար Գոշի մահուան 750ամեակը։ Այդ կապակցութեամբ Երեւանի Մ· Մաշտոցի անուան մատենադարանին մէջ կազմակերպուած է գիտական նստաշրջան։

### "ԱՆՈՒՇ"Ի ՈՒԹՀԱՐԻՒՐԵՐՈՐԴ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄԸ

Յունիս 28ին Երեւանի Ալ· Սպենդիարեան անուան օփերայի և պալետի պետական ակադեմիական թատրոնին մէջ 800րդ անգամ ըլլալով բեմադրուեցաւ Արմէն Տիգրանեանի «Անուշ» օփերան։ Անուշի դերին մէջ հանդէս եկաւ ՍՍՌՄ ժողովրդական արտիստուհի Գոհար Գասպարեան։

## "ԱՐԱԲ ՕՊԶԸՐՎԸՐ" ՍԱՄՍՈՆԵԱՆԻ ՄԱՍԻՆ

Եգիպտական անկախ շաբաթաթերթ «Արաբ Օպզըրվըր»՝ իր 17 Օգոստ. 1964ի թիւին արուեստի բաժնի երկու էջերը նուիրած է ծանօթ նկարիչ և խմբագրութեանս գեղարուեստական բաժնի աշխատակից Ս. Սամսոնեանի։



Հոն տպուած են արուեստագէտին կենդանագիրը և անոր գործերէն ինը նմոյշներ։

Թերթին խմբագրութիւնը՝ ամփոփ գիծերու մէջ տուած է նկարիչին կեանքը, ապա խօսած անոր արուեստի ոճին զարգացման մասին։ Թուած է այն բոլոր յաջողութիւններն ու առաջնութիւնները, զորս Սամսոնեան կրցած է արձանագրել։ Ի միջի այլոց գրած է.

«Ս· Սամսոնեան, 49 տարեկան, նկարչութեան վիթերան մըն է։ Ան, Գահիրէի մէջ, գրեթէ միշտ խլած է նկարչութեան բոլոր մրցանակները։

Վերջին պատիւը, որուն արժանացաւ, «Սալոն Տիւ Գէր»ի 1964ի Ոսկի Մետալն էր։

Անոր գործերէն շատեր գնուած են ԱՄՀի կառավարութեան կողմէ, հարստացնելու համար իր թանգարաններու հաւաքածուները։

Դիմանկարներէն զատ Սամսոնեան կը գծէ«նաթիւր մորդ»եր, ծաղիկներ և երբեմն գիւղան,արներ։ Ամէն տեղ, ուր կ'երթայ, կ'առնէ արագ ուրուագիծեր՝ իր ակնարկին խլած տուեալներովը։ Եւ անգամ մը որ տուն դառնայ, ան կը համադրէ իր ուրուագիծերը և կը լծուի աշխատանքի, ունկնդրելով դասական երաժշտութիւն, նախընտրաբար Պախ և Պեթհովն։»

## ՍՈՒՐԻԱ

### ՀԱՅՐԵՆԱԴԱՐՁՈՒԹԻՒՆԸ ՀԱԼԷՊԷՆ

Մեր պաշտօնակից «Արարատ»ի մէջ կը կարդանք (7 Օգոստոս) որ հայրենադարձութեան արձանագրութիւնները՝ լիազօր պատուիրակ ընկեր Նիկողոս Գասպարեանի կողմէ առաջ կը տարուին տենդագին։ Կառավարութիւնը արդէն տուած է արտօնութիւն։

Առաջին կարաւանը, Սուրիայէն, ճամբայ պիտի ելլէ Հոկտեմբերի սկիզբը։ Հայրենադարձները առնուած են ամէն խաւերէ և պիտի ունենան համապատասխան գործ՝ երկրի մէջ։ Կարաւանը պիտի մեկնի Լաթաքիայէն՝ ուղղակի Հայաստան և պիտի տեղաւորուի Լենինական, Կիրովական, Հրազդան, Լուսաւան, Իջեւան, Հոկտեմբերեան և Աբովեան։

Այս տարի միայն մէկ կարաւան պիտի մեկնի Սուրիայէն, բայց յառաջիկայ տարիներուն՝ աւելի։ Հայրենադարձութիւնը պիտի շարունակուի միշտ։

Հայրենադարձները անմիջապէս պիտի ձեռնարկեն աշխատանքի՝ հայրենիքին մէջ։

## ԵԹՈՎՊԻԱ

### ԱՏԻՍ ԱՊԵՊԱՅԻ ՀԱՄԱԺՈՂՈՎԸ

Լիբանանի Եթովպական Ընդհանուր Հիւպատոսը կը յայտարարէ,թէ Ատիս Ապեպայի մէջ գումարուելիք Արեւելեան Ազգային Ուղղափառ եկեղեցիներու Համագումարը մէկ ամիսով յետաձգուած է և տեղի պիտի ունենայ 11–21 Հոկտեմբերին։

### ԱՇՈՒՂ ՅԱՐՈՒԹ. ՖԻԼԵԱՆԻ ՄԱՀԸ

Ուրբաթ, 14 Օգոստոս, 1964, յետ երկարատեւ հիւանդութեան, Առաջնորդարանին հովանաւորած հանգստեան տան մը մէջ (Ասպասիէ) իր մահկանացուն կնքեց Միջին Արեւելքի մէջ ամենուն ծանօթ աշագուրկ Աշուղ Յարութիւն Ֆիլեան։ Թաղուեցաւ յաջորդ օրը, Հելիոպոլսոյ Ամենայն Սրբոց Ազգ· Գերեզմանատունը։

### Կ'ՈՒԶՈՒԻ

### ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆԻ

համար վարժ հիւանդապահուհի մը։ Թեկնածուներէն կը խնդրուի դիմել վարժարանիս, ամէն օր առաւօտեան ժամը 9էն 12, բացի Ուրբաթ և Կիրակի օրերէն։

Հոգաբարձութիւն
Գալուստեան Ազգ· Վարժարանի

## ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐ

### Ս.Դ.Հ.Կ.Ի ՊԱՏԳԱՄԱՒՈՐԱԿԱՆ ԺՈՂՈՎԸ ՀԻՒՍ. ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԷՋ

Փրովիտենսի մէջ Յուլիս 4–5ին գումարուած է Ամերիկայի Շրջանի Ս· Դ. Հնչակեան 81րդ Պատգամաւորական Ժողովը։

Ժողովը քննած է անցեալ շրջանի աշխատանքները։ Կազմակերպութեան 75ամեակի տօնակատարութիւնները անցած են փառաշուք։ Նոր ուժեր խտացուցած են շարքերը։ Լիբանանի, Սուրիոյ, Եգիպտոսի մեր շրջանները օրէ օր աւելի կը զարգանան։

Պատգամաւորականը զբաղած է Մեծ Եղեռնի Յիսնամեակի հարցով։ Որոշուած է համահայկական միջոցներով և միասնական կերպով հետապնդել մեր իրաւունքներուն վերստացումը՝ «Հայաստանի Կառավարութեան գիտութեամբ և անոր համաձայնութեամբ։ Ուրեմն, ամէն աշխատանք պէտք է սկսի Հայաստանի Կառավարութեան մօտ, որպէսզի ան արդարացնէ Ամենայն Հայոց Կառավարութիւն կոչումը, զոր Գաղթաշխարհը տուած է անոր։»

Ժողովը քննած է գաղթահայ վարժարաններու հարցը։ Մշակութային Կապի սերտացումը, կը գրէ մեր պաշտօնակից «Երիտասարդ Հայաստան»։

## ՈՒՐՈՒԿՈՒԷՅ

### ՓԱՐԱՄԱՃԻ ՊՐՈՆԶԷ ԿԻՍԱՆԴՐԻՆ

Ուրուկուէյի Սոց· Դեմ· Հնչակեան Կուսակցութիւնը Սփիւռքի մէջ առաջին անգամ ըլլալով գաղափարը կ'ունենայ մեծ առաջնորդ անմահն Փարամազի պրոնզէ կիսանդրին բարձրացնելու իր սեփական ակումբին մէջ։

Արդէն արձանը պատրաստուած է, և շուտով մարմարէ պատուանդանի մը վրայ պիտի բարձրանայ։ Այս յոյժ պատուաբեր հանդիսութեան ներկայ պիտի ըլլան Լատին Ամերիկայի Հնչակեան Մասնաճիւղերու ներկայացուցիչներ և այլ յայտնի անձնաւորութիւններ։ Արձանի պատրաստութիւնը գործն է, գնահատուած քանդակագործ և մանրաքանդակ փորագրիչ արուեստագէտ՝ ընկերուհի Անժէլ Գահվէճեանի, քոյրը՝ Մոնթէվիտէոհայ գաղութի շնորհալի ու սիրուած երգչուհի ընկերուհի Մարօ Գահվէճեանի, կը գրէ մեր պաշտօնակից «ՇԱՐԺՈՒՄ»։

## ԹՈՒՐՔԻԱ

### ՀԱՅ ՔԱՀԱՆԱՅ ՄԸ ՊԵՂՈՒՄՆԵՐ ԿԸ ԿԱՏԱՐԷ ՄՈՒՇԻ ՄԷՋ

Ճումհուրիյեթ կը գրէ որ Իսթանպուլէն Հայ քահանայ մը Մուշ գացած է, և սկսած պեղումներ կատարել պատմական Ջանկլի (Ս· Կարապետ) եկեղեցիին մէջ, հնութիւններ գտնելու համար։ Առաջին առթիւ, երեւան ելած են զանազան մեծութիւններով բարձրաքանդակ քարեր, որոնց վրայ փորագրութիւններ կան, նաեւ Մուշի հիմնադիր Մուշեղի գերեզմանը, Քրիստոսէ առաջ 1000ական թըւականներուն:

Քահանան, որ ի ձեռին ունի եկեղեցիին ամբողջ մանրամասնութիւնները ցոյց տուող յատակագիծ մը, յոյս յայտնած է գտնելու միլիոնաւոր ոսկի արժէք ունեցող գանձ մը, որ թաղուած է եկեղեցիին տակ։ Քահանան կ'ըսէ՝ թէ այս եկեղեցին շինուած է արեւապաշտ ցեղի մը կողմէ, որ ապրած է Քրիստոսէ 1000–1500 տարի առաջ։ Քահանան Իսթանպուլ վերադարձած է, յառաջիկային շարունակելու համար պեղումները։

## ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

(Շար· Ա· էջէն)

Ներկայիս, սեփական յօդուած հրատարակող շատ քիչ թերթեր կան սփիւռքի մէջ։ Արտատպումներով՝ թերթ կը «խմբագրեն»... Սակայն, գոնէ պարկե՞շտ ըլլային և իրենց արտատպած տեղը յիշատակէին։ Ո՛չ։ Ոչ միայն չեն յիշեր աղբիւրը, այլ՝ յաճախ՝ Մօ. Եդուարդ Յակոբեանը կը վերածեն «Ե· Յ·»ի, կամ բոլորովին կը վերցնեն ստորագրութիւնը։ Ամբողջական խմբագրականներ կ'արտատպեն իբրեւ «սեփական յօդուած», անոր մէջ յիշատակուած «կեցցէ՛ Ա·Մ·Հ·ը» և այլ կեցցէներ ջնջելով... դաճճաբար։

Թերթ մը համարձակած էր, անգամ մը, մեր խմբագրականին գաղափարական մասին մէջ նժդրակ խաղցնել։ Ուրիշ թերթ մը, մեր աշխատակից Հնչակեան Ս. Փաշաճեանի պատմագիտական մէկ յօդուածը (զոր կը պատրաստուէինք տպել) առօք փառօք մեզմէ առաջ արտատպած էր, առանց յիշելու աղբիւրը։

Այս անպարկեշտ արարքներուն հետ, սփիւռքահայ մամուլը և իր գործիչները ունին բազմաթիւ ուրիշ թերութիւններ, որոնց մասին կարելի է խօսիլ միշտ։

Այսօր այսքանն ըսելէ ետք, կը մաղթենք, որ՝ արթննա՛յ մարդկային և հայկական խիղճը՝ նա՛եւ մամուլի աշխարհին մէջ, սփիւռքահայ թերթերու շրջանակներէն ներս։

Եւ ամոքուին մեր մեծասքանչին վէրքերը, սփոփուի հասարակութեան հոգին ու փրկուի հայ խմբագիրի արժանաւորութիւնը։



ՎԱԶԳԷՆ ԾԱՌԱՅ ՅԻ ՔԻ ՈՂՈՐՄՈՒԹԵԱՄԲՆ ԱՅ ԵՒ ԿԱՄՕՔՆ ԱԶԳԻՍ
ԵՊԻՍԿՈՊՈՍԱՊԵՏ ԵՒ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ,
ԾԱՅՐԱԳՈՅՆ ՊԱՏՐԻԱՐՔ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՆԱԽԱՄԵԾԱՐ ԱԹՈՌՈՅ ԱՅՐԱՐԱՏԵԱՆ
ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՍՐԲՈՅ ԿԱԹՈՒՂԻԿԷ ԷՋՄԻԱԾՆԻ

ՔՐԻՍՏՈՍԱՒԱՆԴ ՍԻՐՈՅ ՈՂՋՈ՜ՅՆ ԵՒ ՕՐՀՆՈՒԹԻ՜ՒՆ ՀԱՅՐԱՊԵՏԱԿԱՆ
ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ ՄԵԾԻ ՏԱՆՆ ԿԻԼԻԿԻՈՅ Տ. Տ. ԽՈՐԵՆԱՅ ԱՌԱՋՆՈՅ,
ՊԱՏՐԻԱՐՔԻՆ ՀԱՅՈՑ ՍՐԲՈՅ ԵՐՈՒՍԱՂԷՄԱՅ Տ. ԵՂԻՇԷԻ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻՆ,
ՊԱՏՐԻԱՐՔԻՆ ՀԱՅՈՑ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍՈՅ Տ. ՇՆՈՐՀՔԱՅ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻՆ,
ՀԱՄՕՐԷՆ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԱՑ, ԵՊԻՍԿՈՊՈՍԱՑ, ՎԱՐԴԱՊԵՏԱՑ, ՔԱՀԱՆԱՅԻՑ ԵՒ ՍԱՐԿԱՒԱԳԱՑ,
ԹԵՄԱԿԱՆ ԵՐԵՍՓՈԽԱՆԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՑ, ԹԵՄԱԿԱՆ ԵՒ ԹԱՂԱԿԱՆ ԽՈՐՀՐԴՈՑ
ԵՒ ՊԱՇՏՕՆԷԻՑ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԱՌԱՔԵԼԱԿԱՆ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՍՐԲՈՅ
ԵՒ ՍԻՐԵՑԵԱԼ ՀԱՄԱՅՆ ՀԱՒԱՏԱՑԵԱԼ ԺՈՂՈՎՐԴԵԱՆ ՀԱՅՈՑ

«Ի մահ համարձակ էին, և մահն իւրեանց անշուշտ կեանք»։

ԵՂԻՇԷ

ՄԵՐ ՀԻՆԱՒՈՒՐՑ ԱԶԳԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ ԿԵՆԴԱՆԻ ՅՈՒՇԱՐՁԱՆ ՄԸՆ Է, ՄԱՐԴԿԱՅԻՆ ԱՇԽԱՐՀԻ ՀՈՐԻԶՈՆԻՆ ՎՐԱՅ ԲԱՐՁՐԱՑՈՂ, ՇԱՂԱԽՈՒԱԾ ՈՒ ՄԱՐՄԻՆ ԱՌԱԾ ՆԱՀԱՏԱԿՆԵՐՈՒ ԱՐԻՒՆՈՎ, ԲԱՐԻԻՆ ՈՒ ԳԵՂԵՑԻԿԻՆ ԾԱՌԱՅԵԼՈՒ ՍՏԵՂԾԱՐԱՐ ՀԱՆՃԱՐՈՎ ԵՒ ՍԵՓԱԿԱՆ ԱԶԳ ՈՒ ԱԶԱՏ ՀԱՅՐԵՆԻՔ ԿԵՐՏԵԼՈՒ ՍՐԲԱԶԱՆ ԿԻՐՔՈՎ, ԱՅՆ ՕՐԷՆ ՄԱՆԱՒԱՆԴ, ԵՐԲ ԱՒԵՏԱՐԱՆԻ ԼՈՅՍԸ ԻՋԱՒ Ի ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀ։ ՔՐԻՍՏՈՍԻ ԱՒԵՏԱՐԱՆՈՎ ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ՀԱՒԱՏԱՑ ԿԵԱՆՔԻՆ, ՀԱՒԱՏԱՑ ԼՈՅՍԻՆ ՈՒ ՇԻՆԱՐԱՐ ԱՇԽԱՏԱՆՔԻՆ, ԵՒ ՀԱՒԱՏԱՑ, ԹԷ **«ՍԷՐ ՈՉ ԵՐԲԵՔ ԱՆԿԱՆԻ»** (Ա ԿՈՐՆԹ. ԺԳ 8) ԵՒ ԱՅՍՊԷՍ ԱՀԱ ԲԱՑԱՒ ԱՆ ԴՌՆԵՐԸ ԻՐ ՀՈԳԻԻ ՈՒԺԵՐՈՒՆ, ԴՌՆԵՐԸ ՅԱՒԻՏԵՆԱԿԱՆ ԿԵԱՆՔԻՆ.

ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ԴԱՐԱՇՐՋԱՆԸ ՍԿԻԶԲ ԱՌԱՒ ՀԻՆԳԵՐՈՐԴ ԴԱՐՈՒՆ, ՀԱՅ ՏԱՌԵՐՈՒ ԳԻՒՏՈՎ ԵՒ ԱՒԱՐԱՅՐԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏՈՎ.

ԱՒԱՐԱՅՐԸ ԼՐՈՒՄԸ ԵՂԱՒ ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԻ ՈԳԵԿԱՆ ՈՒԺԵՐՈՒ ԱՐԳԱՍԱՒՈՐՄԱՆ ՈՒ ՊԱՅԾԱՌ ԱՐՏԱՅԱՅՏՈՒԹԻՒՆԸ ԱԶԳԱՅԻՆ ԻՆՔՆԱԳԻՏԱԿՑՈՒԹԵԱՆ, ԵՒ ՄԻԱԺԱՄԱՆԱԿ ՍԿԻԶԲԸ ՄԵՐ ԲՈՒՆ ԱԶԳԱՅԻՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ, ՈՐ ԻՐ ԴՐՈՇՄԸ ԴՐԱՒ ՅԵՏԱԳԱՅ ԲՈԼՈՐ ԴԱՐԵՐՈՒՆ ՎՐԱՅ։ ՎԱՐԴԱՆԱՆՑ ԵՒ ՂԵՒՈՆԴԵԱՆՑ ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆԸ ԴԱՐՁԱՒ ՄԵՐ ԺՈՂՈՎՈՒՐԴԻ ՃԱԿԱՏԱԳԻՐԸ։ ԵՒ ԱՅԴ ՕՐԷՆ Ի ՎԵՐ, ԱՄԲՈՂՋ ՀԱԶԱՐ ԵՒ ՀԻՆԳ ՀԱՐԻՒՐ ՏԱՐԻՆԵՐ ՇԱՐՈՒՆԱԿ, ՄԵՐ ՆԱԽՆԻՔ ՆՈՅՆ ՀԵՐՈՍԱԿԱՆ ՄԱՐՏԸ ՇԱՐՈՒՆԱԿԵՑԻՆ **«ՎԱՍՆ ՅԻՍՈՒՍԻ, ՎԱՍՆ ՀԱՅՐԵՆԵԱՑ»**, ՆՈՅՆ **«ԶԻ ԲԱՐՁՐԱՑԻ ԿՈՂՄՆ ՃՇՄԱՐՏՈՒԹԵԱՆ»** ՈԳԻՈՎ, ՄԻՇՏ ՄԱՀԸ ՄԱՀՈՎ ՅԱՂԹԵԼՈՒ ՀԱՒԱՏՔՈՎ։

ԱՅԴ ԱՐԻՒՆՈՏ, ԲԱՅՑ ԱԶՆԻՒ ՓԱՌՔԻ ՃԱՄԲՈՒՆ ՎՐԱՅ, ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԻ ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ ԱՐՁԱՆԱԳՐԵՑ ՙԻՐ ՎԵՐՋԻՆ ՄԵԾ ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆԸ, ՅԻՍՈՒՆ ՏԱՐԻՆԵՐ ԱՌԱՋ։

ԱՅՍՕՐ, ՄԵՐ ՍՐՏԵՐԸ ԾՈՎ ՎՇՏՈՎ ԼԵՑՈՒՆ, ՀՈԳԵԿԱՆ ԾԱՆՐ ԱՊՐՈՒՄՆԵՐՈՎ Կ'ՈԳԵԿՈՉԵՆՔ ՅԻՇԱՏԱԿԸ ԱՅՆ ԱՀԱՒՈՐ ՈՃՐԱԳՈՐԾՈՒԹԵԱՆ, ՈՐ ՍԿԻԶԲ ԱՌԱՒ 1915-Ի ԱՊՐԻԼ 24-ԻՆ ԵՒ ՏԵՒԵՑ ԱՄԲՈՂՋ ՀԻՆԳ ՏԱՐԻ, ԲՆԱՋԻՆՋ ԸՆԵԼՈՎ ԱՐԵՒՄՏԵԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՄԱՅՆ ՀԱՅՈՒԹԻՒՆԸ ՍԱՐՍԱՓԵԼԻ ՏԱՌԱՊԱՆՔՆԵՐՈՒ ՄԷՋ, ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ՈՒ ԳՈՐԾԱԴՐՈՒԱԾ ՍՈՒԼԹԱՆԱԿԱՆ ԹՈՒՐՔԻՈՅ ՑԵՂԱՍՊԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ։ ՆԱՀԱՏԱԿՈՒԵՑԱՆ ՄՕՏ ԵՐԿՈՒ ՄԻԼԻՈՆ ՀԱՅԵՐ։ ՀՐԿԻԶՈՒԵՑԱՆ ՈՒ ՔԱՐՈՒՔԱՆԴ ԵՂԱՆ ԲԱԶՄԱՀԱՐԻՒՐ ՇԷՆ ՔԱՂԱՔՆԵՐ ԵՒ ԳԻՒՂԵՐ, ԵԿԵՂԵՑԻՆԵՐ ՈՒ ՎԱՆՔԵՐ ՇԱՏԵՐԸ ՊԱՏՄԱԿԱՆ ՀՈՅԱԿԵՐՏ ԿՈԹՈՂՆԵՐ ՀԱՅ ՃԱՐՏԱՐԱՊԵՏԱԿԱՆ ՀԱՆՃԱՐԻ։ **«ՔԱՋ ՆԱՀԱՏԱԿՔ ՄԵՐ ԱՆԿԱՆ Ի ՊԱՏԵՐԱԶՄԻ, ԵՒ ՍՈՒՐԲ ՔԱՀԱՆԱՅՔ ՄԵՐ ԽՈՂԽՈՂԵՑԱՆ Ի ՁԵՌԱՑ ԱՆՕՐԻՆԱՑ, ԳԵՂԵՑԻԿ ԵՐԻՏԱՍԱՐԴՔՆ ՁԵՆԱՆ Ի ՍՊԱՆՈՒՄՆ, ԵՒ ԲԱԶՈՒՄ ԿՈՒՍԱՆՔ ՎԱՐԵՑԱՆ Ի ԳԵՐՈՒԹԻՒՆ, ԳԻՐԳ ԿԱՆԱՅՔ ԱՆԿԱՆ Ի ՏԱՌԱՊԱՆՍ ԱՅՐՈՒԹԵԱՆ ԵՒ ԲԱԶՈՒՄ ՈՐԲՔ ԿԱԿԱՆԻՆ ԴԱՌՆԱՊԷՍ»**, ԵՒ **«ՇԻՆՈՒԱԾՔ ՄԵՐ ԵՂԵՆ ԳԵՐԵԶՄԱՆՔ ԴԻԱԿԱՆՑ ՄԵՐՈՑ, ԵՒ ՎԱՍՏԱԿՔ ՁԵՌԱՑ ՄԵՐՈՑ ՏԱՊԱԼԵՑԱՆ Ի ՎԵՐԱՅ ՄԵՐ»** (ԵՂԻՇԷ)։ ԱՅԴ ՍԵՒ ՕՐԵՐՈՒՆ ԵԿԱԾ ԷՐ ՊԱՀ ՄԸ, ԵՐԲ **«ԱՅՍ ԱՇԽԱՐՀԻ ՎՐԱՅ ԱՅԼԵՒՍ ԱՆՀՆԱՐ ԷՐ ՀԱՅ ԸԼԼԱԼ»**։ ԱՄԷՆ ՅՈՅՍ ԿՈՐՍՈՒԱԾ ԿԸ ԹՈՒԷՐ, ԵՒ ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ԳԻՐՔԸ՝ ՓԱԿՈՒԱԾ ՈՒ ԱՐԵԱՆ ՄԷՋ ԹԱՂՈՒԱԾ.

ԲԱՅՑ Ո՛Վ ԱՆԻՄԱՆԱԼԻ ԽՈՐՀՈՒՐԴ ՄԱՀՈՒԱՆ ԵՒ ԿԵԱՆՔԻ, ԵՒ Ո՛Վ ՀՐԱՇԱԳՈՐԾ ՈԳԻ ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ.

ՆԱՀԱՏԱԿՈՒԱԾ ԷՐ ԱՄԲՈՂՋ ԺՈՂՈՎՈՒՐԴ ՄԸ, ԱՅՈ՜ ՍԱԿԱՅՆ ՀԱՅԵՐԸ ՉԷԻՆ ՄԵՌԱԾ Ի ՍՊԱՌ. ՎԱՄՆԶԻ ԱՆՈՆՔ ՋՈ-ՀՈՒԵՐ ԷԻՆ ՀԱՒԱՏՔՈՎ ԱՄՈՒՐ, ԹԷ «ԿԵԱՆՔ ՔՐԻՍՏՈՍ Է ԵՒ ՄԵՌԱՆԵԼ ՇԱՀ» (ՓԻԼԻՊ Ա 21). ԱՆՈՆՔ, **«ՈՐՊԷՍ ՍԿՍԱՆ ՔԱՋՈՒԹԵԱՄԲ, ՆՈՅՆՊԷՍ ԵՒ ԿԱՏԱՐԵՑԻՆ ՔԱՋԱՆԴԷՍ ՆԱՀԱՏԱԿՈՒԹԵԱՆ, ԼԻ ԵՐԿՆԱՒՈՐ ՍԻՐՈՎՆ ԵՒ ԱՐՏԱՓԱՅԼԵՑԻՆ ԻԲՐԵՒ ՋԱՀԵԳԱԿՆ Ի ՄԷՋ ՏԻԵԶԵՐԱՑ. ՈՐՈՑ ԵՒ ԱՆՈՒԱՆՔ ՆՈՑԱ ԳՐԵԱԼ ԵՆ Ի ԴՊՐՈՒԹԵԱՆ ԿԵՆԱՑ»** (ՅՈՎՀ ԴՐԱՍԽԱՆԱ-ԿԵՐՏՑԻ).

ԻՆՉՊԷՍ ՎԱՐԴԱՆԱՆՑ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻ ՕՐԵՐՈՒՆ ԵՒ ԱՅՆՈՒՀԵՏԵՒ ԴԱՐԵՐ ՇԱՐՈՒՆԱԿ ՄԱՀԸ ՅԱՂԹՈՂ ՀԱՅՈՑ ՊԱՏ-ՄՈՒԹԵԱՆ ՈԳԻՆ ՍՆԳԱՄ ՄԸ ԵՒՍ ՊԱՏՌԵՑ ՎԱՐԱԳՈՅՐԸ ԱՆՈՂՈՔ ՃԱԿԱՏԱԳՐԻՆ, ՈՒ ԿԵԱՆՔԻ ԿՈՉԵՑ ՄՆԱՑՈՐԴԱՑԸ ՄԵՐ ՆԱՀԱՏԱԿՈՒԱԾ ԱԶԳԻՆ. **«ԻՒՐ ՔԱՋ ՈՐԴԻՈՑ ՍՈՒՐԲ ԱՐԻՒՆՈՎ»** ԱՐԻԱՑԱԾ ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ՀԱԶԱՐ ՀԻՆԳ ՀԱՐԻՒՐ ՏԱ-ՐԻՆԵՐ ՅԵՏՈՅ, ԿԱՐՄԻՐ ՎԱՐԴԱՆԻՆ ՄԵԾ ԱՒԵՏԻՍ ՏՈՒԱՒ ՍԱՐԴԱՐԱԲԱԴՈՎ.

ԵՒ ԱՀԱ ՔԱՌԱՍՈՒՆ ԵՒ ԱՒԵԼԻ ՏԱՐԻՆԵՐԷ Ի ՎԵՐ, ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԻ ՄԱՅՐ ՔԱՆԳՈՒԱԾԸ, ՄԵԿՏԵՂՈՒԱԾ ԻՐ ՆԱԽ-ՆԵԱՑ ՄԱՅՐ ՀՈՂԻ ՎՐԱՅ, ԻՐ ՀԱՅՐԵՆԻ ՀԱՐԱԶԱՏ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ ՀՈՎԱՆԻՒՆ ՆԵՐՔԵՒ, ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴ-ՆԵՐՈՒ ԿՈՂՔԻՆ ԻՐ ԵՐՋԱՆԻԿ ԱՊԱԳԱՆ ԿԸ ԿԵՐՏԷ ԱՊԱՀՈՎՈՒԹԵԱՆ, ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ԵՒ ՅԱՌԱՋԴԻՄՈՒԹԵԱՆ ԱՆ-ՆԱԽԸՆԹԱՑ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒ ՄԷՋ ԻՍԿ Ի ՍՓԻՒՌՍ ԱՇԽԱՐՀԻ ՑՐՈՒԱԾ ՊԱՆԴՈՒԽՏ ՀԱՅԵՐԸ, ԻՐԵՆՑ ԱՉՔԵՐԸ ՅԱՌԱԾ ԴԷՊԻ ՎԵՐԱՇԻՆՈՒՈՂ ՈՒ ԾԱՂԿՈՂ ՄԱՅՐ ՀԱՅՐԵՆԻՔԸ, ՅԱԳԵՑԱԾ ԿԵԱՆՔԻ ՆՈՐ ԱՒԻՒՆՈՎ ԵՒ ՈԳԵՇՆՉՈՒԱԾ ԱԶՆԻՒ ՀՊԱՐ-ՏՈՒԹԵԱՄԲ ՈՒ ՎԱՌ ՏԵՍԻԼՔՆԵՐՈՎ ԴԷՊԻ ՀԱՅՈՑ ԱՊԱԳԱՆ ԿԵՐԱԶԵՆ ՕՐ ՄԸ ՎԵՐԱԴԱՌՆԱԼ ՅԱՒԵՐԺԱԿԱՆ ԱՐԱՐԱՏԻՆ, ԻՐԵՆՑ ՀԱՅԱՍՏԱՆՑԻ ՔՈՅՐԵՐՈՒՆ ԵՒ ԵՂԲԱՅՐՆԵՐՈՒՆ ՄՕՏ ԻՐԵՆՑ ՏՔՆՈՒԹԵԱՆ ԲԱԺԻՆԸ ԸՆԾԱՅ ԲԵՐԵԼՈՒ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ՄԱՅՐ ՀԱՅՐԵՆԻՔԻՆ.

ՀԱՅՈՑ ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆԸ ՎԵՐՋՆԱՊԷՍ ՊՍԱԿՈՒԱԾ Է ՅԱՂԹՈՒԹԵԱՆ ԲՐԱԲԻՈՆՈՎ ՈՒ ՆՈՐ ԿԵԱՆՔԻ ԼՈՒՍԱԲԱՑՈՎ ԵՒ ՎԵՐԱԾՆԱԾ Է ՄԵՐ ՀԻՆԱՒՈՒՐՑ ԵՐԿԻՐԸ ՀԱՅԱՍՏԱՆ ԻԲՐԵՒ ԱԶԳԱՅԻՆ ՊԵՏՈՒԹԻՒՆ:

ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԻ ԶԱՒԱԿՆԵՐԸ, ՈՐ Ի ՀԱՅԱՍՏԱՆ ԵՒ Ի ՍՓԻՒՌՍ ԱՇԽԱՐՀԻ, ԱՅՍՕՐ, ՄԵԾ ԵՂԵՌՆԷՆ ՅԻՍՈՒՆ ՏԱՐԻ ՅԵՏՈՅ, ԵՐԿԻՒՂԱԾՈՒԹԵԱՄԲ ԿԸ ԽՈՆԱՐՀԻՆ ԲԻՒՐԱՒՈՐ ՆԱՀԱՏԱԿՆԵՐՈՒ ԱՆՅԱՅՏ ԳԵՐԵԶՄԱՆՆԵՐՈՒՆ ԱՌՋԵՒ ՈՒ ԿԱՂՕ-ԹԵՆ ԱՆՈՆՑ ԱՆՄԱՀ ՀՈԳԻՆԵՐՈՒ ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ԵՒ ԵՐԱՆՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ ԵՒ ԿԸ ՎԵՐԱՆՈՐՈԳԵՆ ԻՐԵՆՑ ՈՒԽՏԸ ՍՈՒՐԲ ՊԱՀԵԼՈՒ ԱՆՈՆՑ ՆՈՒԻՐԱԿԱՆ ՅԻՇԱՏԱԿԸ ՈՒ ՄՆԱԼՈՒ ՀԱՒԱՏԱՐԻՄ ԱՆՈՆՑ ԼՈՅՍ ՀԱՒԱՏՔԻՆ, ԱՆՈՆՑ ՀԵՐՈՍԱ-ԿԱՆ ՈԳԻԻՆ, ՀԱՅՈՑ ԱԶԳԸ ՄԻԱՑԵԱԼ ՈՒ ՀԱՅՈՑ ԱՄԲՈՂՋ ԵՐԿԻՐԸ ՓՐԿՈՒԱԾ ՏԵՍՆԵԼՈՒ ԱՆՈՆՑ ՊԱՅԾԱՌ ԵՐԱԶԻՆ.

**«ՊԱՆԾԱՑԷՔ ԴՈՒՔ ԸՆԴ ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹԵԱՆ ՁԵՐ ՆՈՐՈԳԵՑԷՔ ԱՊԱ ՅԻՇԱՏԱԿՍ ՆԱԽՆԵԱՑ»** (ԱԼԻՇԱՆ):

ԱՅՍՕՐ ԲՈԼՈՐ ՀԱՅԵՐՈՒՆ ՀԱՄԱՐ ՈՒՐ ՈՐ ԱԼ ԳՏՆՈՒԻՆ ԱՆՈՆՔ, ԱՂՕԹՔԻ ՕՐ Է ՆԱԵՒ ՄԵՐ ԺՈՂՈՎՈՒՐԴԻ ԽԱՂԱՂ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՈՒ ԲԱՐՕՐՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ ՄԵՐ ՆՈՐԱԿԵՐՏ ՀԱՅՐԵՆԻ ԵՐԿՐԻ ԱՆՍԱՍԱՆՈՒԹԵԱՆ ՈՒ ՇԻՆՈՒԹԵԱՆ ՀԱ-ՄԱՐ ԱՊՐՈՂ ՈՒ ՇՆՉՈՂ ԵՒ ԼՈՅՍԻ ՄԷՋ ԱՃՈՂ ՄԱՅՐ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՄԱՐ

ՄԵՐ ՆԱՀԱՏԱԿՆԵՐԸ ՄԵՌԱՆ ԱՊՐԵԼՈՒ ՅՈՅՍՈՎ ԵՒ ՀԱՅ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՎԵՐԱԾՆՈՒՆԴԻ ՏԵՍԻԼՔՈՎ

ԱՅՍՕՐ, ԲՈԼՈՐԻՍ ՀԱՄԱՐ ԱՂՕԹՔԻ ՕՐ Է ՆԱԵՒ ՀԱՄԱՅՆ ԱՇԽԱՐՀԻ ԽԱՂԱՂՈՒԹԵԱՆ ԵՒ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐՈՒ ԻՐԱՒ ԵՂԲԱՅՐՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ, ՈՐՊԷՍԶԻ ԱՅԼԵՒՍ ԵՐԲԵՔ ԱՇԽԱՐՀԻ ԵՐԵՍԻՆ ՈՉ ՄԷԿ ՏԵՂ ԱՐԻՒՆ ՉՀՈՍԻ, ԵՒ ՄԱՐԴԻԿ ՍՈՒՐ ՉՔԱ-ՇԵՆ ԻՐԵՆՑ ՆՄԱՆՆԵՐՈՒՆ ՎՐԱՅ ԹՈՂ ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ ԸԼԼԱՅ ԱՇԽԱՐՀԻ ԲՈԼՈՐ ՍԱՀՄԱՆՆԵՐՈՒՆ ՎՐԱՅ ԵՒ ԲՈԼՈՐ ՄԱՐԴՈՑ ՍՐՏԵՐԷՆ ՆԵՐՍ ԹՈՂ **«ՈՂՈՐՄՈՒԹԻՒՆ ԵՒ ՃՇՄԱՐՏՈՒԹԻՒՆ ՊԱՏԱՀԵՍՑԻՆ, ԱՐԴԱՐՈՒԹԻՒՆ ԵՒ ԽԱՂԱՂՈՒ-ԹԻՒՆ ՀԱՄԲՈՒՐԵԼՑԻՆ»** (ՍԱՂՄ ՁԴ 14)

ՄԵՆՔ, ՀԱՅՐԱՊԵՏ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ՄԵՐ ԱԶԳԻ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՄԵԾ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ ՅԻՍՆԱՄԵԱՅ ՏԱՐԵԼԻՑԻ ՍԵ-ՄԻՆ, ԱՅՍՈՒ ՄԵՐ ԿՈՆԴԱԿԱՒ ԿԱՌԱՋԱԴՐԵՆՔ ՈՒ ԿԸ ՀՐԱՀԱՆԳԵՆՔ

Ա. ՈՐ ՅԱՌԱՋԻԿԱՅ 1965 ՏԱՐԻՆ ՀՌՉԱԿՈՒԻ ՄԵՐ ԵԿԵՂԵՑԻԻՍ ԵՒ ՀԱՄԱՅՆ ՄԵՐ ԺՈՂՈՎՈՒՐԴԻՆ ՀԱՄԱՐ ԱԶԳԱՅԻՆ ՍՈՒԳԻ ԵՒ ԱՂՕԹՔԻ ՏԱՐԻ

Բ. ՈՐ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՅՑ ԲՈԼՈՐ ԵԿԵՂԵՑԻՆԵՐՈՒՆ ՄԷՋ ԱՊՐԻԼ 24-ԻՆ, ՏԵՂԻ ՈՒՆԵՆԱՆ ԿՐՕՆԱԿԱՆ ՅԱՏՈՒԿ ԱՐԱ-ՐՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ ԵՒ ՀՈԳԵՀԱՆԳՍԵԱՆ ՊԱՇՏՕՆՆԵՐ ԱՂՕԹԵԼՈՒ ՀԱՄԱՐ ՄԵՐ ԲԻՒՐԱՒՈՐ ՆԱՀԱՏԱԿՆԵՐՈՒ ՀՈԳԻՈՑ ԽԱ-ՂԱՂՈՒԹԵԱՆ ԵՒ ԼՈՒՍԱՒՈՐՄԱՆ ՀԱՄԱՐ

Գ. ՈՐ ԲՈԼՈՐ ՀԱՅ ԵԿԵՂԵՑԻՆԵՐՈՒՆ ՄԷՋ Ս ՍԵՂԱՆԻ ՄԸ ԱՌՋԵՒ ՋԵՏԵՂՈՒԻՆ ՄՇՏԱՎԱՌ ԿԱՆԹԵՂՆԵՐ ՆՈՒԻՐՈՒԱԾ ՀԱՅ ՆԱՀԱՏԱԿՆԵՐՈՒ ՅԻՇԱՏԱԿԻՆ Ս ԷՋՄԻԱԾՆԻ ՄԱՅՐ ՏԱՃԱՐԻՆ ՄԷՋ ՄՇՏԱՎԱՌ ԿԱՆԹԵՂ ՄԸ ՊԻՏԻ ՋԵՏԵՂՈՒԻ ՔՐԻՍ-ՏՈՆԷՈՒԹԵԱՆ ԱՌԱՋԻՆ ՄԱՐՏԻՐՈՍ Ս ՍՏԵՓԱՆՈՍԻ [illegible] ՈՐ ԻՒ ԱՅՍՈՒՀԵՏԵՒ ՊԻՏԻ ՄԱՏՈՒՑՈՒԻ ՅԱՏՈՒԿ ՍՈՒՐԲ ՊԱՏԱՐԱԳ ԱՄԷՆ ՏԱՐԻ ԱՊՐԻԼ 24-ԻՆ,

Դ. ՈՐ ԲՈԼՈՐ ՀԱՅ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿՈՒԹԵԱՆՑ [illegible] ՄԷՋ ՀԱՅ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՀՈՎԱՆԻՒՆ ՆԵՐ-ՔԵՒ ԱՆԽՏԻՐ, ԲՈԼՈՐ ՀԱՅԿԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆՑ [illegible] ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԻՆ ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ՅՈՒ-ՇԻ ԵՒ ՅԱՐԳԱՆՔԻ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՀԱՒԱՔՈՅԹՆԵՐ [illegible] ԳՐԱԿԱՆ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՆԻՍՏԵՐ ՀԱՅ ԵՒ ԱՅԼԱԶԳԻ ՀԱՄԱՐԱԿՈՒԹԵԱՆՑ ՀԱՄԱՐ ՆՈՒԻՐՈՒԱԾ ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻՆ,

Ե. ՈՐ ՀԱՅ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԱԶԳԱՅԻՆ-ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՊԱՏՄԱԳԻ-ՏԱԿԱՆ-ԳՐԱԿԱՆ ՄՇԱԿՈՒԹԱՅԻՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԵՒ ՀԱՅ ՄԱՄՈՒԼԸ ԻՐԵՆՑ ՍԵՊՈՒՀ ՊԱՐՏՔԸ ՀԱՄԱՐԵՆ ԽՕՍ-ՔՈՎ ՈՒ ԳՈՐԾՈՎ ՈԳԵԿՈՉԵԼՈՒ ՆՈՒԻՐԱԿԱՆ ՅԻՇԱՏԱԿԸ ՄԵԾ ԵՂԵՌՆԻ ՏԱՐԻՆԵՐՈՒՆ ՄԱՐՏԻՐՈՍԱՑԱԾ ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐ-ԴԻՆ, ՀԱՅ ՀՈԳԵՒՈՐԱԿԱՆՆԵՐՈՒՆ ԵՒ ԳՐԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՄԵԾԱՆՈՒՆ ԳՈՐԾԻՉՆԵՐՈՒՆ. ՀՐԱՊԱՐԱԿԵԼՈՎ ՀԱՅ ԵՒ ԱՅԼԱԶԳԻ ՀԵՂԻՆԱԿՆԵՐՈՒ ՊԱՏՄԱԿԱՆ ՎԿԱՅՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՎԱՒԵՐԱԹՈՒՂԹԵՐԸ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ. ՅՈՒՇԵՐԸ ԵՒ ԳՐԱԿԱՆ-ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԳՈՐԾԵՐԸ

ԹՈՂ ԲԱՐԵԳՈՒԹՆ ԱՍՏՈՒԱԾ ՅԱՒԵՐԺԱԿԱՆ ՓԱՌՔԻ ՄԷՋ ՀԱՆԳԻՍՏ ԵՒ ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ ՊԱՐԳԵՒԷ ՄԵՐ ԱԶԳԻ ՆԱՀԱՏԱԿ ԶԱՒԱԿՆԵՐՈՒ ՄԱՔՈՒՐ ԵՒ ԱՆՄԵՂ ՀՈԳԻՆԵՐՈՒՆ ԵՒ ԻՐ ՊԱՀԱՊԱՆ ԱՋԸ ՏԱՐԱԾԵԱԼ ՊԱՀԷ ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐ-ԴԻ ԵՒ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՎՐԱՅ, ՈՐՊԷՍԶԻ ԱՆՈՆՑ ԿԵԱՆՔԻ ԱՐԵՒԸ ՄԻՇՏ ՊԱՅԾԱՌ ՇՈՂԱՅ, ՈՐՊԷՍԶԻ ԱՆՈՆՔ ՅԱՒԵՐԺ ԱՊՐԻՆ ՈՒ ԱՃԻՆ, ԵՒ ՄԻՇՏ ԲԱՐՁՐԱՆԱՆ, ԱՇԽԱՐՀԻՆ ԸՆԾԱՅԱԲԵՐԱԾ ԻՐԵՆՑ ԱՐԴԱՐ ՎԱՍՏԱԿՈՎ

ԹՈՂ ԱՊՐԻ ՅԱՒԷՏ ՀԱՅ ԱԶԳԸ ՀԱՄԱՅՆ ՈՐՊԷՍԶԻ ՇԱՏՆԱՅ ԼՈՅՍԸ ԱՇԽԱՐՀԻ

**«ԵՐԱՆԻ՛ ՍԳԱՒՈՐԱՑ, ԶԻ ՆՈՔԱ ՄԽԻԹԱՐԵՍՑԻՆ· ԵՐԱՆԻ՛ ՈՐ ՔԱՂՑԵԱԼ ԵՒ ԾԱՐԱՒԻ ԻՑԵՆ ԱՐԴԱՐՈՒԹԵԱՆ, ԶԻ ՆՈ-ՔԱ ՅԱԳԵՍՑԻՆ»** (ՄԱՏԹ Ե 4 6)



Տուաւ կոնդակս ի 17 ն օգոստոսի
1964 Փրկչական ամի.
և ի տումարիս Հայոց ՌՆԺԴ.
ի մայրավանս Սրբոյ Էջմիածնի:
Հմր 497

ԾԱՅՐԱԳՈՅՆ ՊԱՏՐԻԱՐՔ ԵՒ ԿԱԹՈՂԻԿՈՍ
ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ



ՄԱՍՆԱՒՈՐ «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

# ՄԵՐ ՇՐՋԱՊՏՈՅՏԸ ԱՐԵՒԵԼԵԱՆ ԵՒՐՈՊԱՅՈՒՄ

Գրեց ՆՈՒՊԱՐ ՏԷՐ ՄԻՔԱՅԷԼԵԱՆ

1964 թ. Յուլիս ամսին Հայաստանի 450 ուսուցիչներ, բարեկամութեան ՀԱՅԱՍՏԱՆ գնացքով, Երեւանից մեկնեցին դէպի Արեւելեան Եւրոպա, կտրելով 8000 կիլոմետրից աւելի երկար մի ճամբայ։ Մենք էլ երեքով, մայրիկս, Մարոն և ես, միանալով տուրիստական այդ մեծ խմբին, անցանք Սովետական Միութեան Արեւմտեան մասից, տեսնելով վեց երկրների՝ Վրաստանի, Ուկրաինայի, Բելոռուսիայի, Լիտվիայի, Լատվիայի և Ռուսաստանի մայրաքաղաքներն և այլ մեծ քաղաքները, ինչպէս նաև գեղեցիկ բնութիւնն ու տեսարանները, բազմաթիւ ծովերն ու գետերը, անծայրածիր անտառներն ու դաշտերը։

Եւ իրօք աշխարհագրական շատ ծանօթ անուններ, որոնց միայն գրքերից էինք տեղեակ, անձամբ տեսանք այս 20օրեայ շրջապտոյտի ժամանակ։ Անդրկովկասեան և Կովկասեան լեռներից յետոյ մենք տեսանք Ուկրաինայի, Բելոռուսիայի, Ռուսաստանի և այլ երկրների անսահման տարածութիւնները, որտեղ մեր աչքերին յագուրդ տալու աստիճան, մենք տեսանք ցորենի, եգիպտացորենի, արեւածաղիկի և այլ բուսականութեանց անսահման դաշտեր։ Դաշտեր որոնք մեր աչքին առջև փռւում էին այլազան կանաչ գոյների և ոսկեգոյնի գեղեցիկ խառնուրդով, հորիզոնից մինչև հորիզոն։ ՀԱՅԱՍՏԱՆ մեր գնացքը օրերով անցնում էր անծայրածիր անտառների և մարդուն հաց տուող անսահման դաշտերի միջով։

Բացի այդ, մենք տեսանք Սև, Ազովի և Բալթիկ ծովերը, ֆիննական ծոցը, ինչպէս նաև Քուրի, Կուբանի, Դոնի, Դնեպրի, Դաուգավայի, Նեմանի, Դուինայի, Նևայի, Մոսկուայի և Վոլգայի պատմական գետերը։ Տեսանք Հայաստանի խրոխտ լեռները, Վրաստանի կանաչազարդ սարերն ու դաշտերը, Կուբանի արեւածաղիկի և Ուկրաինայի ցորենի անծայրածիր արտերը, Ռուսաստանի անսահման անտառները և Բալթիկ երկրների գեղեցիկ ծաղիկները։ Մեր վրայ խոր տպաւորութիւն թողուցին Ռուսաստանի հին և նոր մայրաքաղաքների պալատներն ու մեծ շէնքերը, ինչպէս նաև անսահման հարստութիւնները, Բալթիկ երկրների բուսականութիւնը, իր կանաչով և ծաղիկներով, Քիեւի, Ռիգայի և այլ քաղաքների ակնահաճոյ մաքրութիւնը։ Վերջապէս այս կարճ ժամանակում մենք տեսանք բազմաթիւ ժողովուրդներ (ռուս, ուկրաինացի, բելոռուս, վրացի, լատիշ և լիտվացի) որոնք խիստ բարեկամական զգացումներով տոգորուած մէկը միւսի նկատմամբ, զբաղուած էին իրենց առօրեայ խաղաղ և ստեղծագործ աշխատանքով։

Այս բոլորը կինօժապաւէնի նման անցնում էին մեր աչքերի առջևով, սակայն ոչ շարժանկարային արուեստական ձևով, այլ բնական իր տեսարաններով, իսկական իր գոյներով, ֆոնով, մարդկային կուլտուրան և արուեստները իրենց անցեալի և ներկայի մեծահարուստ նմոյշներով, թանգարանների անգին հարստութիւններով և վերջապէս մարդկային մտքի զարգացման ամենագեղեցիկ օրինակներով։

Մենք տեսանք բազմաթիւ գիւղեր, քաղաքներ և կայարաններ, որոնք վերջին աշխարհամարտի ընթացքին, ֆաշիստական լծի տակ, կործանուել էին մասամբ կամ ամբողջութեամբ, սակայն այսօր, վերջին երկու տասնամեակում, ժողովրդի խաղաղ և շինարար աշխատանքի շնորհիւ, կրկին անգամ կեանքի են կոչուել, դառնալով բարեկարգ և գեղեցիկ աւաններ և քաղաքներ։ Տեսանք ֆաշիստական զօրքերի բարբարոսական արարքների վայրերն (Վիլնիուս, Կաունուս և Լենինկրատ) ու ահաւոր տեսարանները։ Տեսանք նաև այն ճանապարհներն ու քաղաքները (Տուլա, Արիոլ, Կուրսկ) որտեղից անցել էին Նաբոլէոնի բանակները։

Յուլիսի 13ի երեկոյեան մեր գնացքը մեկնեց արեւաշող Հայաստանի սիրուն մայրաքաղաքից։ Յաջորդ օրն առաւօտեան անցանք Թբիլիսից, երեկոյեան մօտեցանք Սև Ծովին և ուշ ժամանակ հասանք Սուխումի, Վրաստանի մաս կազմող ինքնավար Աճարիայի մայրաքաղաքը։ Յաջորդ օրը, Յուլիսի 15ին, խմբով գնացինք ման գալու մերձարեւադարձային սիրուն քաղաքում, որտեղ տարին 12 ամիս կանաչ է։ Տեսանք կապիկների աշխարհում եղող ամենամեծ բուծարաններից մէկը, որտեղ հաւաքուած են աշխարհի ամէն կողմից ամէն տեսակի կապիկներ և որոնց վրայ կատարւում են բժշկական տեսակի բարդ փորձեր։ Ապա ման եկանք քաղաքում, տեսանք սիրուն պարտէզները, լողացանք ծովափում։ Գնացքը երեկոյեան մեկնեց Սուխումիից դէպի Քիեւ։

Երկու օր շարունակ գնացքը անցաւ երկու ծովերի եզերքով և բազմաթիւ գետերի վրայով, ընդարձակածաւալ անտառների և դաշտերի միջով, բազմաթիւ կայարաններից և քաղաքներից։ Վերջապէս ամսի 17ին կ. վ. հասանք Ուկրաինայի սիրուն մայրաքաղաք Քիեւ, ուր մնացինք դարձեալ մի օր։ Քաղաքը գտնւում է Դնեպր գետի ափին, ամբողջ կանաչութեան մէջ, շրջապատուած անտառներով, իսկ փողոցներն էլ զարդարուած ծաղիկներով։ Մեր Երեւանի մրցակից Քիեւը իրօք որ գեղեցիկ քաղաք է։ Աւտոբուսով ման եկանք քաղաքում։ Տեսանք գլխաւոր փողոցները, հրապարակները և

(Շար. տես էջ 8)

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

(Շար. Բ. էջէն)

սկսաւ կաղալ։ Ինչո՞ւ։ Պատճառները պէտք է փնտռել ոմանց «վեհապետական իրաւունքներ»ուն մօտ...։ Գիտական աշխատանոց մը — կարելի՞ է երեւակայել որ սկսուի և դեռ՝ երկու տարի է՝ ի վիճակի չըլլայ օգտագործուելու...։

Կը հարցնե՛նք. մեր համայնքին ղեկավարները հանդիսացող ազգայիններէն քանի՞ հոգի այցելած են վարժարան և հարցուցած՝ թէ բանի մը պէտք ունի՞ն։ Դասագիրքի խնդիր, դասարանի խնդիր, գրասեղան-նստարանի խնդիր, մարզարան-խաղարանի խնդիր, ուսման արաբական ծրագիրի պատշաճեցման խնդիր, բժշկական խնամքի խնդիր — ոչ ոք ոչինչ գիտէ ասոնց մասին։ Պէտք է Հոգաբարձութեան Ատենապետը միայն հոգայ ասոնք, տնօրէնին հետ։ Եւ տնօրէնը՝ ո՞ր մէկուն պիտի հասնի. անպարտաճանաչները ուղղելո՞ւ թէ ուսումնական ծրագիրը հետապնդելու։

Իշխանութեանց (ազգային) և կարգ մը պաշտօնատարներու այս կեցուածքին քով՝ դրէ՛ք նաև որոշ ծնողներու անփութութիւնը, ըսենք անգիտակցութիւնը։

Արագօրէն բնաշրջուող, գեղեցկօրէն բարեշրջուող և հիմնովին յեղաշրջուող այս հանրապետութեան մէջ՝ հայ քաղաքացի-ծնողներուն յետամնացութիւնը անըմբռնելի է։

Չե՛նք խօսիր անոնց մասին, որոնք օտար վարժարանը կը նախընտրեն ազգայինէն՝ դեռ հայ մանուկը չկազմուած։ Անոնք վերջը պիտի հասկնան աւերը՝ զոր կը գործեն հայ ոգին օտարներուն գիրկը նետելով... Սակայն, իրենց զաւակները ազգային վարժարան ղրկող կարգ մը ծնողներու անտարբերութիւնը՝ խիստ ցաւալի կը գտնենք։

Ծնողները պէտք է գործակցին վարժարանի տնօրէնութեան և ուսուցչութեան, ու դիւրացնեն աշխատանքը։ Հաստատութեան օրէնքները — որոնք տասնեա՛կ տարիներու հնութիւն ունին, կամ եթէ նորեր՝ հրահանգուած են պետութենէն — պէտք է կէտը կէտին յարգուին և գործադրուին։

Վերամուտի արձանագրութիւնները պէտք չէ յապաղեցուին և դպրոցի օրերուն ձգուին։ Վերաքննութեանց թուականները (որոնք պետական քննիչներուն տեղեկացուած են) պէտք է յարգուին ու աշակերտը որոշեալ օրը պէտք է դպրոց ներկայանայ։

Կրթական գործը, ամէն ժողովուրդի մէջ, ցենսական, հիմնական և ճակատագրական գործ մըն է։ Իշխանութիւններ (ազգային կամ ոչ), մարմիններ, պաշտօնէութիւն, ծնողներ և աշակերտութիւն, բոլորը պէտք է գիտակցին անոր գերկարեւորութեան, ու թեթեւօրէն չվերաբերուին անոր հետ...

Ահա՛ այս է որ պիտի պահանջէինք դպրոցական վերամուտի սեմին, նոր ու գալիք շրջաններուն համար յաջողութեան և յառաջդիմութեան մաղթանքներ ուղղելով մեր կրթական գործիչներուն։

ՀԱՄԱՑՆԱԳԻՏԱԿԱՆ

# ԱՐԱԲԱԿԱՆ ՄԻԱՑԵԱԼ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԻՒՆԸ

## ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԸ

Մատենադարանին մէջ ընթերցողներու թիւը 1952ի 74.000էն բարձրացած է 700.000ի՝ 1963ին։

## ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹԵԱՆ ՀՈԳԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ

Պետութիւնը մեծ խնամք կը տանի երիտասարդութեան։ Ստեղծուած է Երիտասարդութեան Նախարարութիւնը՝ նոր սերունդին շահերը պաշտպանելու և անոր բնաշրջումը ապահովելու համար։

Երիտասարդական բանակատեղիներու և զբօսապտոյտներու շրջանակը լայնցած է։ Օգտուողներու թիւը 1951ին 30.000 էր, 1963ին եղած է կէս միլիոն։ Երիտասարդական կեդրոններուն թիւն է 11 և կրնան 300.000 հոգի պարունակել։

## ԱՌՈՂՋԱՊԱՀԱԿԱՆ ՀՈԳԱԾՈՒԹԻՒՆԸ

Այս մարզին տրուած նպաստը 1951–52 թուականին 10.100.000 ոսկի էր, 1964–65ին եղած է 44.300.000։

— Առողջապահական ապահովագրութեանց օրէնքին գործադրութիւնը սկսած է 1964 Սեպտեմբերին։

— Առողջապահական գիւղական կեդրոններուն անդամագրուած ընտանիքներուն թիւն էր 1826, 1952ին։ 1963ին եղած է 7.649։

— Փոխանցիկ հիւանդութեանց համար անկողիններուն թիւը 1952ին 2.035 էր, 1963ին եղած է 9.553։

— Մօր և զաւկի պաշտպանութեան համար սպասարկութեանց միաւորներուն թիւը օրէ օր կ'աճի. 1952ին անոնք 295 հատ էին՝ 1963ին եղած են 1112։ Դարմանողական այլազան սպասարկութեանց թիւը 1952ին 35.744 էր, 1963ին եղան 58.402։

## ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹԻՒՆԸ

1956ին հրապարակուած համագործակցական շարժման օրէնքը հնարաւորութիւն տուաւ պետութեան, որ քաջալերէ համագործակցական համագումարները՝ երկրագործական արտադրութեանց ճարտարարուեստականացումը և ընկերային ծրագիրներու իրագործումը, ձգտելով բարձրացնել միջավայրին մակարդակը և կենսագործել արտադրութեան բազմացումը։

Պետութիւնը գիւղացիներուն կը տրամադրէ անհրաժեշտ փոխատուութիւնը և անոնց կը հայթայթէ մեքենական սպասարկութիւն։

Երկրագործական ապահովագրութիւնը կը կայանայ մշակողները տնտեսապէս օժտելու արարքին մէջ, մինչ համագործակցական ընկերութիւնները կը զբաղին մեծաքանակ առեւտուրով ու կ'ապահովեն Թուրթոյի և այլ արտադրութեանց բաշխումը՝ միօրինակ և միարժէք գիներով, սև շուկայի դէմ պայքարելու համար։

Համագործակցական օրկանիզմը (կազմակերպութիւնը)՝ ազգային տնտեսութեան մէջ գօօփերաթիֆ շրջանակի ընդհանուր քաղաքականութեան ամրապնդման համար, կը գործէ հետեւեալ մարզերուն մէջ.—

1) Ստեղծում և նպաստաւորում՝ սպառումի համագործակցական ընկերութեանց.

2) Մասնակցութիւն՝ գոյութիւն ունեցող ընկերութեանց դրամագլուխին.

3) Փոխատուութեանց և յատկացումներու շնորհում՝ համագործակցական ընկերութեանց։

Կառավարութիւնը իր հողերէն որոշ մասեր յատկացուցած է միջակ բնակութեանց կառուցման՝ համագործակցական ընկերութեան անդամներուն համար, ընկերվարական քաղաքականութեան շրջանակին մէջ։ (6)

# ՓՈՐ-ՍԱՅԻՏԻ ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ

Անցեալ ամիս Փոր-Սայիտ ժամանեցին Սովետ երկու ճարտարապետներ՝ Սիմոն Քոպելեյ և Վլատիմիր Սթաթուն, որոնք Ս. Միութեան Վոլկոկրատ քաղաքի վերաշինող Յանձնախումբի գործօն անդամներն եղած են։ Փոր-Սայիտի կառավարիչը՝ Էմատէլտին Ռուշտի, գիրենք հրաւիրած է խորհրդակցելու՝ Փոր-Սայիտի վերաշինական աշխատանքներուն համար։ Երկու ճարտարապետները արդէն մէկէ աւելի ժողովներ ունեցան արաբ ճարտարապետներու հետ։

Սովետական հիւպատոս Ալեք. Փոսթնիքով ճաշկերոյթ մը տուաւ ի պատիւ երկու սով. ճարտարապետներուն։ Ճաշկերոյթին ներկայ էին արաբ բազմաթիւ անձնաւորութիւններ։



Առաջին ծիծառները—Սփիւռքահայ երեխաներու առաջին խումբը դաստիարակչուհիի՝ Լ. Ժամկոչեանի հետ, Երեւան, «Կարապի լճի» ափին։

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

24 ՍԵՊՏ. 1964


## ՄԱՐԶԱԿԱՆ

### ՍԿԱՒԱՌԱԿԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՎԵՐՋԻՆ ՉԱՓԱՆԻՇԸ

*Վերջերս Չեխոսլովաքիոյ ըՍթավոյ Թըրնով սթատին մէջ տեղի ունեցան կարգ մը նախապատրաստական մրցումներ Թոքիոյի Ողիմպիականին համար: Այս մրցաշարքին կ'արժէ յիշել Չեխոսլովաք Լուտվիկ Տանէքի սկաւառակի համաշխարհային նոր մրցանիշը, արձակելով 2 քիլ. 004 ծանրութեամբ սկաւառակն՝ 64 մ. 55: Տանէք ամէն ջանք կ'ընէ որպէսզի հասնի 65 մեթրի:*

*Ուրեմն Թոքիոյի Ողիմպիականին համար ունինք երեք կարեւոր մրցակիցներ.— Չեխ Տանէքը, ամերիկացի Օրթէրը և ռուս Թրուսեննիեւը: Այս երեքը փորձերու ժամանակ արձակած են 62 մեթրէն աւելի, քանի մը անգամներ: Անոնցմէ յետոյ կուգայ լեհ Պէժիէ, որ կրցած է միայն 59էն 60. մ. արձակել: Իր վերջին արձակումը եղած է Անգլիոյ հետ կազմակերպուած մրցումին 58 մ. 67, անգլիացի մրցակից Հոլինկզուորթի 54 մ. 01ի դէմ:*

### ՆԻԶԱԿԻ ՆՈՐ ՄՐՑԱՆԻՇ



*Մոսկուայի վերջին մրցումներուն Էլվինա Օզոլինա իր 1963ի համաշխարհային մրցանիշը (59 մ. 78) բարելաւեց՝ արձակելով 6 մ. 38 և այսպէսով աշխարհի իգական սեռի նիզակի ախոյեանուհին հռչակուեցաւ:*

### ՖՈՒԹՊՈԼ

*Երկարէբացակայութենէնետք, վերջապէս Անիլի նոր խումբը, բաղկացած երիտասարդ ուժերէ, պիտի խաղայ երկու մրցումներ Սուտանի Ալ Հիլալ խումբին հետ 30 Հոկտեմբերին և 1 Նոյեմբերին, Խարթումի մէջ:*

ՎԱՀԱՆ ԳԱԶԱՆՃԵԱՆ

---

ՔՐ. ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԻՆԵԱՆ
ՕՐ. ՆՈՒԱՐԴ ԳԷՈՐԳԵԱՆ
*ԱՄՈՒՍՆԱ ԵԱՑԱՆ*

20–9–1964 Խարթում-Գահիրէ

Մեր ջերմագին շնորհաւորութիւնները նորապսակ ամոլին եւ իրենց ծնողաց:

---

### ՀԱՅԿ. ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ

Օր. Լիզէթ Ճերմակեանի ընդ Պր. Միհրան Տիւրկէրեանի բարեբաստիկ նշանախօսութեան առթիւ վասն խնդակցութեան Տէր եւ Տիկին Վահան Խաչերեան 100 ե. դ.

Ողբ. Թադէոս Գալֆայեանի կենծալի մահուան առթիւ, վասն ցաւակցութեան Պր. Արթօ Սառաֆեան 50 ե. դ.:

Ողբ. Փօլանիի Տէրտէրեանի տխուր մահուան առթիւ, վասն ցաւակցութեան Պր. Արթօ Սառաֆեան 50 ե. դ.:

Պր. Տիգրան Տիգրանեանի ընդ Օր. Սեդա Էմիրզեանի բարեբաստիկ ամուսնութեան առթիւ, Տէր եւ Տիկին Յովսէփ Կիւմիւշեան (Աղեքս.) 100 ե. դ.:

---

### ՎՐԻՊԱԿ

*«Ջահակիր»ի 17 Սեպտ.ի թիւին «Զրոյց Մայրերու Հետ» գրութեան ստորագրութիւնը՝ «ԱՍՏՂԻԿ», սխալմամբ տպուած է «Անահիտ»:*

*Կը խնդրուի նկատի ունենալ:*

---

«Ջահակիր»ի Աղեքսանդրիոյ ներկայացուցիչն է Պր. ՎԱՀԱՆ ՊԷՆՏԵԱՆ, Հելիոպոլիս փողոց թիւ 18, Բամլէ, Քան Տը Սեզար:

---

ՍԱՏԱՆԱՅԻՆ ԽԱՂԱԼԻԿԸ
Յաջորդ թիւով

---

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ
## ԳԱՀԻՐԷ

*Հինգշաբթի, 24 Սեպտ. 1964էն սկսեալ և ամէն Հինգշաբթի*

### ՀԱՅԿԱԿԱՆ ԵՐԳԵՐՈՒ ԺԱՄ

**ԺԱՄԸ 7·30էՆ 8·30**

*Բոլոր անոնք, որոնք կը փափաքին ունկնդրել իրենց նախասիրած հայկական երգերը, պարտին խնդրագիր ուղարկել սրահի վարչութեան մինչև ամէն Երկուշաբթի երեկոյ:*

### ☐ ՊԱՏԱՆԵԿԱՆ ՇԱՐԺՈՒՄ ☐

Շաբաթ, 26 Սեպտ. 1964, կ. ե. ժամը 8ին

**ՏԱՐԵԴԱՐՁԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ**

Սեպտեմբեր ամսուան մէջ ծնած պատանի անդամներուն

**ՀԱՃԵԼԻ ԽԱՂԵՐ եւ ՊԱՐ**

Բոլոր պատանի անդամներն ու ընկերները սիրով կը հրաւիրուին:

---

### Հ. Բ. Ը. ՄԻՈՒԹԻՒՆ — ՆԻՒ ԵՈՐՔ

### ՀՐԱՒԻՐԱԳԻՐ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎԻ

Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան Կեդրոնական Վարչական Ժողովը պատիւ ունի հրաւիրելու Միութեան բոլոր իրաւասու անդամները ներկայ գտնուելու 51րդ Ընդհ. Ժողովին, որ պիտի գումարուի Շաբաթ, 5 Դեկտեմբեր 1964, առաւօտեան ժամը 9·30ին, Միութեան Կեդրոնական Գրասենեակին մէջ, 250 Ֆիֆթ Էվընիւ, Նիւ Եորք, Ն. Ե.:

Եթէ օրինական մեծամասնութիւն մը ներկայ չըլլայ վերոյիշեալ թուականին, այս ծանուցումը պիտի նկատուի իբրեւ երկրորդ հրաւէր Ընդհանուր Ժողովի, որ պիտի գումարուի ՇԱԲԱԹ եւ ԿԻՐԱԿԻ, 12–13 Դեկտեմբեր 1964, առաւօտեան ժամը 9·30ին, ՍԹԷՅԹԼԸՐ ՀԻԼԹԸՆ ՊԱՆԴՈԿԻՆ մէջ, Սեվընթ Էվընիւ եւ 33րդ փողոց, Նիւ Եորք 1, Ն. Ե.:

Այն բոլոր իրաւասու անդամները որ ներկայ պիտի ըլլան այս ժողովին, օրինական մեծամասնութիւն պիտի կազմեն:

#### ՕՐԱԿԱՐԳ

1. Ընդհանուր Տեղեկագիր 1963 Տարեշրջանի:
2. Ընդհանուր Հաշուետուութիւն 1963 տարեշրջանի:
3. Ընտրութեան Կեդր. Վարչ. Ժողովի՝ իրենց պաշտօնավարութեան շրջանը աւարտած անդամներու տեղ:
4. Կանոնագրի Փոփոխութիւններ:
5. Առաջարկներ եւ Թելադրութիւններ:
6. Գնահատանքի Բանաձեւեր:

Ի ԴԻՄԱՑ ԿԵԴՐ. ՎԱՐՉ. ԺՈՂՈՎԻ

| Ատենադպիր | Ատենապետ |
|---|---|
| Մ. Մ. ՅՈՎՍԷՓԵԱՆ | Ա. ՄԱՆՈՒԿԵԱՆ |

Նիւ Եորք, 1 Սեպտ. 1964

---




Պատասխանատու Տնօրէն-Խմբագիր.— ՍԱՐԳԻՍ Մ. ՓԱԼԱՍԱՆ — Գրական բաժին.— ՀԱԿՈԲ ԺԱՄԿՈՉԵԱՆ եւ ԱՐՄԷՆ ՏԱՅՆՈՒՐ — Գեղարուեստական բաժին.— Մօ. ... — Հայկական կեանքի բաժին.— ... — Մարզական բաժին.— ՎԱՀԱՆ ԳԱԶԱՆՃԵԱՆ — ... — ՆՈՒԲԱՐ ՓԱԼԱՍԱՆ, Հեռ. 915013 - 62590 — ... Հեռ. 915013 — ...

Խմբագրութիւն եւ Վարչութիւն.— 21, ... Գահիրէ ... Հեռ. 915013 (3 գիծ) ...

